ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

## ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ԵՐԿԵՐ

## ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

## Ա

## ՊԱՏՄԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ- 2006

ՀՏԴ 941(479.25)
ԳՄԴ 63.3(2Հ)
Ա 205

**Ադոնց, Ն. Գ.**

Ա 205 Երկեր. հատ. Ա., Պատմագիտական ուսումնասիրություններ /Հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հովհաննիսյանը . - Եր., Երևանի համալս. հրատ., 2006, 652 էջ + 1 էջ ներդիր:

Նիկողայոս Ադոնցի երկերի առաջին հատորն ընդգրկում է հին և միջնադարյան Հայաստանի քաղաքական պատմությանն ու հոգևոր կյանքին, սոցիալ-տնտեսական հարաբերություններին նվիրված հիմնական աշխատությունները: Ներկայացված ուսումնասիրություններից շատերը կարևոր ներդրում են ոչ միայն հայագիտության, այլև ընդհանուր պատմագիտության բնագավառում:

Հասցեագրվում է հայագետներին և ընթերցող հանրությանը:

Ա $\frac{0503020913}{704\ (02)\ 06}$ 2006 ԳՄԴ 63.3(2Հ)

ISBN 5-8084-0704-4






FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

ԵՊՀ հրատարակչությունը իր երախտագիտությունն է հայտնում
**ԳԱԼՈՒՍՏ ԳՅՈՒԼԲԵՆԿՅԱՆ**
հիմնարկության Հայկական բաժանմունքի տնօրեն
դոկտոր **ԶԱՎԵՆ ԵԿԱՎՅԱՆԻՆ,**
մեծանուն հայագետ Ն. Ադոնցի երկերի ժողովածուի
հինգհատորյակի հրատարակությունը նախաձեռնելու և
հովանավորելու համար:

*Խմբագրական հանձնաժողով*
*Հովհաննիսյան Պ. Հ., Մաղոյան Ա. Գ., Ստեփանյան Պ. Գ.*

*Հատորը հրատարակության պատրաստեց*

*Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ*

## ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՎՈՐԻՉ ԵՎ ԱՆԱԿ ՊԱՐԹԵՎ
(էջ 169)

Գրված է 1928 թ. Փարիզում: Բնագիրը պահվում է Բոստոնի «Հայրենիք» ամսագրի արխիվում: Առաջին անգամ տպագրվել է «Հայրենիք» ամսագրում (1928, 6-րդ տարի, № 9, էջ 73-80): Թարգմանվել է ֆրանսերեն («Grégoire L'Illuminateur et Anak Le Parthe», տե՛ս «Revue des E'tudes Arméniennes», Paris, 1928, t. VIII, p. 233-245): Արտատպվում է «Հայրենիք»-ի հրատարակությունից:

1. Ագաթանգեղոսին նվիրված Ա. Գուտշմիդի ուսումնասիրությունը լույս է տեսել



1877 թվականին: Այդ ժամանակ շրջանառության մեջ էին Ագաթանգեղոսի Պատմության լատիներեն (1835), իտալերեն (1843) և ֆրանսերեն (1867) թարգմանությունները: – Էջ 170:

2. Ակնարկում է Գ. Տեր-Մկրտչյանի՝ «Ագաթանգեղոսի աղբյուրներից. Յիշատակ դատակնքաց Գորիա և Շմոնի վկայից որ վկայեցան յՈւռհա» ուսումնասիրությունը (տե՛ս «Արարատ», 1896, № 8, էջ 385-392, № 9, էջ 425-440): – Էջ 171:

3. Տե՛ս «Ագաթանգեղոս առ Գէորգայ Ասորի եպիսկոպոսին և ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց», գրեց Հ. Տաշյան, Վիեննա, 1891: – Էջ 179:

# ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՎՈՐԻՉ ԵՎ ԱՆԱԿ ՊԱՐԹԵՎ

Ագաթանգեղոսի անունով մեզ հասած պատմությունը խմբագրական գործ է, ինչպես նորագույն քննադատությունը պարզել է: Երկի հիմնական մասն է Գրիգորի կյանքը, հավելածում՝ Ս. Հռիփսիմյանց վկայաբանությունը, Գրիգորի վարդապետությունը և Տեսիլը: Չորս հատվածները տարբեր ծագումով հմտորեն հյուսված են խմբագրի կողմից և կազմում են մի հավաք ամբողջություն:

Սակայն, Գրիգորի կյանքն իսկ միապաղաղ գործ չէ: Կա պատմական կորիզ և վկայաբանական կեղև: Ճշմարիտ է, մտացածին զրույցներն ու հրաշքները վկայաբանությանց սովորական զարդ են դարձել, բայց կա **modus in omnibus:** Արտաքոց հերյուրանքները, նույնքան արժանավոր սրբի մասին, նշան են, որ հնարագետ հեղինակը իրապես հարուստ չէ տեղեկությամբ և ստիպված է ապաստանել երևակայության, բացը լցնելու համար: Եթե այլ փաստ չլիներ, բավական էին այն հրաշքները, որ պատմում է Ագաթանգեղոս, որպեսզի կասկածի տակ առնվեր նրա ականատես լինելու հավակնությունը:

Վկայաբանական հողակույտի մեջ հազիվ քանի մի հատուկտոր և հարգի քարեր են նշմարվում: Գրիգորի կյանքը գրի առնելու փույթը վերաբերում է այնպիսի ժամանակի, երբ նրա իսկական պատկերը արդեն աղոտացել էր հասարակական հիշողության մեջ: Գրերի գյուտը բնականորեն պիտի բերեր իր հետ ազգային ինքնագիտակցության զարթում և հայրենի անցյալի հետաքրքրություն: Բանավոր հիմք չկա կարծելու, որ Լուսավորչի առաքելությունը կարող էր գրված լինել օտար լեզվով նախքան հայ գրականության ծնունդը:

Որքան և ժողովրդական համարենք Լուսավորչին հենց սկզբեն, թվում է, որ առավելապես հայ անդրանիկ մտավորությունն է, որ արժանավորել է նրա հռչակը և ստեղծել ազգային մի մեծ սրբություն առաքելական լուսապսակը գլխին: Նա է, որ հետամուտ է եղել նաև հավերժացնելու դեռ կենդանի թեև արդեն աղավաղ ավանդությունները հայ եկեղեցու հիմնադրի մասին, գրի առնելով այն զրույցները, որ շրջում էին նրա և, նրա թագակիր գործակցի, և հրաշափառ դարձի վերաբերյալ:

Լուսավորչի, Տրդատի, Սուրբ կույսերի անվան, կամ սկզբնական վկայարանների շինության հարած զրույցները ինչ ձևով և ոգով են եղել գրի

առնված նախապես, մնում է հնության գաղտնիք և մեզ անմատչելի՝ այլևս: Սակայն, պետք է կարծել, որ նրանք քաջահայտ էին այն անձին և գրչին, որ թաքնված է Ագաթանգեղոս անվան տակ: Սա է, որ անջատ նյութերը գտել, իրար է կցել և մշակել ամբողջական պատմություն: Հավանորեն շատ բան զեղչած է հնից և մտցրած նոր ավելուքներ, անկապ զրույցները միմյանց ընտելացնելու և մի շաղախ կազմելու դիտավորությամբ:

Որքան և ճգնել է խմբագրական գործի հետքերը թաղել, բայց և այնպես նրանք մնացել են նշմարելի մինչև իսկ սովորական աչքի համար: Գերման հայտնի գիտնական Ա. Գուտշմիդ, որին է պատկանում Ագաթանգեղոսի լավագույն և խիզախ քննադատությունը, չգիտենալով հանդերձ հայերեն և օգտվելով թարգմանությունից (1), կարողացել է հետևել և նշանակել բոլոր այն կետերը, ուր բաղադրելի հատվածները իրար են կցած, կարծես մի կարված, որ մատնում է միացրած պատառների փոխանցման գծերը:

Խմբագիրը հավատացնում է, որ ինքը գրում է որպես ականատես, բայց խոստովանում է իր գրավոր աղբյուրը, որտեղից քաղել է իր տեղեկությունները: «Սուտապատում ճարտարախօս» չեմ, ասում է նա, «այլ զյաճախագոյնս թողեալ եւ ի նշանաւոր գիտակաց քաղելով զիամառօտսն կարգեցաք»:

Առաջաբանում իրեն Տրդատի քարտուղար է համարում և գրում է պատմությունը «ի ձեռնարկութենէ նշանագիր ժամանակագրացն»: Կույսերի մասին խոսելիս չի ծածկում, որ նրանց վկայաբանությունը հայտնի է եղել, «որոնց աւաւասիկ եւ ճառք ի միջի ձերում պատմին»: Հույն թարգմանիչը խոհեմությամբ հապավել է այս խոսքերը: Տեսիլը միտումնավոր բանաստեղծություն է, ինչպես և վարդապետությունը՝ շարադրություն է, կազմված Բարսեղի **«Վեցօրէք»-ի** շնչով, նման այն շինծու ճառերի, որ հին պատմիչները դնում են ընտրյալ հերոսների բերանը: Վիրապից նոր ելած Գրիգոր շրջապատված է խուռն բազմությամբ, որ դառնում է նրան հետևյալ խոսքերով. «արդեօք ո՞չ յիշեսցես զչարիսն զոր մեք ընդ քեզ արարաք, եւ տայցե՞ս մեզ զուղիղ **վարդապետութիւն**»: Նրանով նախապատրաստում է հեղինակը և արդարացնում վարդապետության ներկայությունը, որ կլանում է գրքի մեծագույն մասը: Ո՛չ Տեսիլը և ո՛չ վարդապետությունը չեն կարող վերագրվիլ Գրիգորին ոչ մի կերպ:

Լուսավորչի կյանքը, որ կազմում է գրական Ագաթանգեղոսի պատմական կորիզը, այն ևս կարկատված է զանազան պատառներից: Արդեն Գուտշմիդ նկատել է, որ մի տեղ Գրիգորի Խոր-Վիրապում տանջվիլը 13 տարի է հաշվում, մի ուրիշ տեղ 15, որ պարզ նշան է աղբյուրների տարբերության:

Զգալի նմանություններ կան Գրիգորի չարչարանքների և Գորիա և

Շմոնի վկայաբանության մեջ, ինչպես վերջերս ապացուցվեց (2): Այս պարագան մի նոր հիմ է տալիս զատելու Գրիգորի առաքելությունը իր վկայաբանությունից՝ մեկը պատմություն է, մյուսը՝ գրականություն:

Պատմական մասերու մեջ ամենեն ստույգը համարելու է Գրիգորի կյանքը: Սակայն, այս ևս զերծ չէ թվում կասկածելի տարրերից: Այն օրվանից, երբ Գրիգորի մանկությունը կապվել է Տրդատի հետ, պատմական իսկությունը որոշ չափով գունատվել է և տուժել: Նախարարական միջավայրի հասկացողությունները դրել են իրենց դրոշմը Գրիգորի պատկերի վրա: Այս հասկացողությամբ հայ երկրի մեծապանծ Լուսավորիչը պետք է, որ սոսկ ծագում չունենար, այլ ազնվական. նա զավակ է ոչ ուրիշ, քան Պարթև ցեղի, որ ժամանակին ամբողջ Արևելքում առաջին տոհմն էր համարվում և քայլում էր շատ և շատ գահերի վրա արքայական պերճությամբ: Գրիգորը հասարակ մահկանացու չէ, այլ սերում է պարթևական Սուրեն ճյուղի ազնվական արյունից, և հարազատ որդի է Անակ իշխանի:

* * *

Այս միակ փորձը չէ կապելու Գրիգորին Արշակունի տոհմին: Գեղջուկ Զենոբը պահել է մի ուրիշ զրույց, իրոք հրաշակերտ, որ գայթակղեցրել է անգամ Խորենացուն:

Բուրդար անունով ոմն **ի նշանաւոր ազգէն Պարսից** գնում է պանդխտության Գամրաց կողմերը և Կեսարիայում ամուսնանում է Եվթաղ կոչված մեծատան քրոջ Սոփիի հետ: Տարին չբոլորած Բուրդար առնում է իր կնոջ և ճանապարհ ընկնում դեպի հայրենիք՝ պարսից հողը: Նրա ետևից գնում է և աները՝ Եվթաղը: Հասնելով Արարատյան գավառը, Վաղարշապատ քաղաքը, Սոփին մտնում է Գրիգոր մանկան մոտ իբր ստնտու և սնուցանում նրան:

Երբ Խոսրովի սպանության հետևանքով Անակի ազգատոհմը ոչնչացվում է, Բուրդար խլում է Գրիգորին իր մոր Ոգուհու ձեռքից, հանձնում իր կնոջ Սոփուն և հեռանում Կապպադովկիա, հարկավ, աներոջ հետ միասին: Այստեղ կրթվում է, ուսանելով հելլեն և ասորի դպրություն և լեզու: Տասներկու տարեկան հասակում պսակվում է Դավիթ բարեպաշտ մարդու դստեր հետ, անունը Մարիամ: Ունենում է երկու որդի, Վրթանես և Արիստակես:

Ագաթանգեղոս անծանոթ չէ այս զրույցին: Զենոբի ասելով, ոչ միայն Գրիգորն է ազատվում սրից, այլ և նրա եղբայրը Սուրենը, որ սնվում է իր հորաքեռ մոտ՝ պարսից երկրում:

Ագաթանգեղոս ևս գիտե, որ երկու մանուկ է փրկված. «ապրծեալ ոմն ապրեցուցանէր ի ձեռն դայկեաց ուրումն, զմին ի կողմանս Պարսից եւ զմին ի կողմանս Յունաց»:

Դարձյալ Ագաթանգեղոս անգետ չէ, որ Լուսավորիչ երկու որդի է ունեցել, «յայնմ ժամանակի լուան յոմանց ի տեղեկաց որ գիտակ արարին զքագաւորն վասն սրբոյն Գրիգորի զի յառաջ մինչդեռ ի մանկութեան տիսն էր ամուսնացեալ եւ երկու որդիս ստացեալ, որոյ առաջնոյն անուն ճանաչի Վրթանէս, որ յաշխարհակաց կեանս էր, որ ապա եւ յաստիճան պաշտաման եկաց յերիցութեան»: Երկրորդը՝ Ռստակեսը մանկությունից ընդունում է ճգնավորական կյանք:

Զենոբը հիշում է մենակյացի անունը, Նիկոմաքոս, որի մոտ է գնում Ռստակեսը: Ագաթանգեղոս անունը չի տալիս, այլ ուզում է հավատացնել, որ ինքը չէ գնում ուրիշի մոտ, այլ իրեն են միանում ոմանք, «գտեալ զոմանս յինքն յարեցուցեալ» (Գլ. 123):

Անհավանական չէ ենթադրել, որ երբեմն երկու իրարից անկախ զրույց է եղել Լուսավորչի ծագման վերաբերյալ:

Մեկի հիմն է ցույց տալ, որ Լուսավորիչն պարթև արյուն ունի և է որդի Անակ իշխանի: Մյուսը իր սկզբնական ձևով Գրիգորի հայրն է համարել Բուրդարին, որը նմանապես անտոհմիկ ոմն չէ, այլ «ի նշանաւոր ազգէն Պարսից», կամ ինչպես Խորենացին է ասում «ոչ ի փոքունց եւ յաննշանից»: Բուրդարի կինը՝ Սոփի «կապպադովկէացի» է «եւ է քոյր Եւթաղի», որ դարձեալ «յայտնի ոմն է» և մեծատուն: Ասել է թե Գրիգորը օտար չէ արևմուտքին. իր ծագումով մի ոտը արևելք է, մյուսը՝ արևմուտք:

Բնական կասկած է ծագում, արդյոք սկզբում խոսքը Եվթաղի և Սոփու մասին չէ՞ եղել, որ նրանք են համարվել Գրիգորի ծնողները:

Հետո միայն Եվթաղ աներ է դուրս բերած, հոր դերը զիջանելով Բուրդարին, որպեսզի այս կերպ կապվի մանուկ Գրիգորը արևելյան ազնվական տոհմի հետ:

Հետագայում երկու զրույցները Անակի և Բուրդարի շուրջը ձուլվել են և կազմել մի պատմություն, ուր Բուրդարին և իր կինը այլևս հայր և մայր չեն Գրիգորի համար, այլ լոկ դայակ, ստնտու, Եվթաղն էլ աներ է:

Անունների ընտրությունը նպատակավոր է, որպես վայել է առասպելական պատմությանը: Եվթաղ մեծատուն է, **Euthalios** նշանակում է հունարեն «հարուստ», Սոփի, **Sophia**, «իմաստութիւն», Բուրդար հավանորեն, պարսկերեն **burdar** «տանող», որ պատշաճում է և որոշում անձի էությունը որպես դայակ:

Երևում է որ Գրիգորի մանկության պարագաները հյուսված են Տրդատի պատմության օրինակով: Որպիսի զուգադիպություն: Երկու մանուկ, զոհ միևնույն ընտանեկան ղժբախտության, փախչում ազատվում են օտար երկիր, իրար հանդիպում և միևնույն գործի ծառայում: Երկուսի արկածային մանկությունը և վերջնական հաղթանակը ավելի վիպական բնույթ ունին, քան պատմական և մեկը, անշուշտ, ձևած է մյուսի վրա:

Վերականգնել իսկությունը դժվար է: Տրդատի փախուստը հավանական է, թեև Ագաթանգեղոսի տված պարագաները կասկածելի են: Եղիշեն ևս գիտե, որ Տրդատ «ի տղայութեան փախուցեալ ի հայրասպան մարդախոխող հօրեղբարցն իւրոց, ապրեալ անաւ» Հունաց երկրում: Բայց թվում է, թե ուրիշ տեղեկություն ուներ սպանության հեղինակների մասին: Տրդատի հոր Խոսրովի սպանողներն իր հարազատ եղբայրներն են եղած՝ մի հանգամանք, որ խախտում է Ագաթանգեղոսի պատմության հիմը:

Բյուզանդացի հեղինակ Զոնարաս, քաղելով Դիոն Կասսիոսից, հաղորդում էր Գալլոս կայսեր մասին խոսելիս, որ նույն ժամանակ պարսիկները գրավեցին Հայաստան, մինչ Տրդատ թագավորը փախավ և նրա որդիքը անցան պարսից կողմը (II, 589):

Սրանով կասկածի տակ են ընկնում հայ աղբյուրների ավանդածը Տրդատի մասին:

Գալլոս կայսրը թագավորում էր 251-253 տարիներում: Խոսրովի սպանվելով Հայաստանը չի կորցնում իր թագը, այլ գահն է անցնում նրա որդի Տրդատը: Սա 252 թ. մոտավորապես պարսիկների ճնշման տակ փախչում է որպես գահակալ թագավոր և ոչ «ի տղայութեան հասակի»:

Գիտնականների կողմից եղած փորձերը հաշտեցնելու օտար և հայ տեղեկությունները համարելու են անհաջող:

Այս հակասությունը ցույց է տալիս, որ Տրդատի և իր հոր Խոսրովի պատմությունը պարուրված է հայ ավանդության մեջ վիպական պաճուճանքով: Բյուզանդական վեպը ընտանի էր հայ ազնվականության շրջանում ինչպես և պարսկականը: Տրդատի անձը նույնչափ հերոսական էր որքան Սասանյան Արտաշիրի: Սա սկիզբը դրավ պարսիկ ազգային վերածնության, հիմնելով նոր և փառահեղ հարստությունը և վերականգնելով Իրանի հին կրոնը՝ զրադաշտականությունը: Հայ թագավորը ևս նախապետ էր հանդիսանում Հայաստանի կրոնական վերանորոգության և նոր և հայացած Արշակունի արքայական տան:

Արտաշիրի կյանքը զարդարված է հրաշալի առասպելներով: **«Կարնամակը»**, ուր պատմվում է Արտաշիրի կյանքի վեպը, բացառիկ գրական-պատմական գործ է, որ արտահայտում է նույն ժամանակվա վիպական ճաշակը և ծանոթացնում ժողովրդական ստեղծագործության շրջուն մոտիվների հետ:

Հիմք կա կարծելու, որ նման զրույցներ հյուսված են եղել և Տրդատի կյանքի շուրջը, նման գույներով նկարված նրա պատկերը: Հայ մատենագիր Ագաթանգեղոսը հարմար չէ գտել փծուն առասպելները և նրա գրչի տակ թափվել են կենդանի պատկերից բոլոր մսերը և մնացել չոր կմախքը:

* * *

Ագաթանգեղոսի հունարեն թարգմանությունը սկսվում է մի հատվածով, որ պակասում է հայերեն բնագրի մեջ: Նա վերաբերում է Արտաշիրի և Արտավանի բախման և քիչ տարբերությամբ կրկնվում է «Կարնամակի» մեջ: Առասպելական զրույց: Այս հանգամանքը պերճորեն վկայում է Ագաթանգեղոսի երբեմնյան կապը «Կարնամակի» հետ:

Բանասիրության մեջ կարծիք է հայտնված, որ հիշյալ վիպական հատվածը Ագաթանգեղոսից չէ առնված, այլ հույն թարգմանիչն է, որ ավելացրել է քաղելով անհայտ աղբյուրից:

Դժվար թե կարելի է համաձայնել այս ենթադրության: Ի՞նչ շարժառիթ պիտի ունենար թարգմանիչը կցելու Ագաթանգեղոսին մի պարսկական զրույց, որ կրոնական որևէ շահ չունի և եկեղեցական տեսակետից անճոռնի առասպել է: Ագաթանգեղոսի թարգմանությունն այլ նպատակ չունի, եթե ոչ ներկայացնելու հայ եկեղեցու հիմնադրի կյանքը՝ ի պետս կրոնական վեճերի մյուս եկեղեցիների հետ: Ինչո՞ւ պիտի թարգմանիչը ավելացներ մի զրույց, որ անարժեք է եկեղեցական նկատումով: Հավանական է, որ հայ բնագրում եղել է իրոք նույն հատվածը: Զարմանալի է, որ հույնը չէ տալիս Ագաթանգեղոսի անունը, չէ հիշում, որ թարգմանելի գործը Տրդատի իսկ քարտուղարին է պատկանում: Այսպիսի կարևոր տեղեկություն չէր կարող բարձիթողի անել թարգմանիչը, եթե առաջաբանը իր ներկա ձևով հայտնի լիներ նրան:

Ճշմարիտ է, առաջաբանի ընդհանուր միտքը ծանոթ է հույն թարգմանչին, այն, որով մատենագիրը համեմատվում է օտարաղեմ վաճառաշահ նավարկուի հետ: Սակայն, այստեղից դեռ չի հետևում, որ տրամադրելի է այժմյան առաջաբանը իր ներկա վիճակում: Թվում է, որ առաջաբանը նորեն խմբագրված է և մտցրած Ագաթանգեղոս քարտուղարի անունը: Նախնի առաջաբանն ավելի ամփոփ պետք է եղած լինի և ազատ այն վատթար տեսակի հռետորական դպրոցի արհեստական ոճից և բառակուտակներից, որ տեսնում ենք այժմ: Նավարկության պատկերը եղել է նաև Փարպեցու առաջաբանում, որի միայն հետքերն են մնացել:

Փարպեցու առաջաբանի խառնակ վիճակը բացատրելու է նրանով, որ մի նոր ձեռք կամեցել է համաձայնեցնել Ագաթանգեղոսի վերամշակված առաջաբանի հետ: Տրդատի քարտուղար Ագաթանգեղոսին է վերագրված նաև Անանունի պատմությունը Սեբեոսի մոտ:

Այս պատմությունը նախապես կազմում է եղել Փավստոսի մասը այս կամ այն ձևով, և իհարկե, առանց Ագաթանգեղոսի անվան:

Ագաթանգեղոսի արդի առաջաբանի խմբագրության ժամանակը

որոշելու համար հաշվի առնելու է Ագաթանգեղոս անվան հիշատակությունը Անանունի մոտ: Գաղտնի թելի երկու հանգույցներն են, գուցե, միաժամանակ կապված: Մեր նպատակը չէ լուծել այդ հանգույցները: Ինչ որ մեզ այս րոպեիս զբաղեցնում է, Արտավանին նայող հատվածն է: Ընդունենք անգամ, որ այդ հատվածը չի եղել հայ բնագրում, այլ առնված է ուրիշ տեղից: Հունարեն թարգմանությունը պատկանում է հայ մարդու և նա առած պիտի լինի նույն հատվածը, եթե ոչ Ագաթանգեղոսի օրինակից, ուրիշ հայ աղբյուրից: Ասել է, թե հայ շրջաններում ծանոթ է եղել:

Մեզ թվում է, որ ներկա Ագաթանգեղոս պահել է նաև ուրիշ մոտիվներ, որ հատուկ են պարսկական վեպին, որպիսին է «Կարնամակը»:

Արտաշիրը փախչում է Արտավանի պալատական աղջկա հետ, բռնելով ուղին դեպ հարավային Պարսկաստան, որպեսզի ապստամբության դրոշը բարձրացնէ ընդդեմ Արտավանի: Ամենից առաջ նրան հարում է մի ազնվական մարդ, որ թվում է Սպահանի իշխանն է: Նրա անունն էր Բանակ: Նա ևս փախած էր Արտավանի երեսից և մեկուսացած ապրում էր իր վեց որդիների հետ:

Արտաշիրը սկզբում կասկածով է վերաբերում Բանակին, կարծելով, որ նա կեղծում է, որպեսզի նենգորեն իրեն բռնէ և տանէ Արտավանի ձեռքը: Բանակը ամեն կերպ համոզում է, երդվելով որ հավատարմությամբ կծառայի նրան: Արտաշիրը շարունակում է իր ուղին, բայց շուտով դառնում է Բանակի մոտ և նրա հետ միասին հարձակվում է Արտավանի վրա, ջարդում նրա զորքերը և տիրանում նրա ժառանգության:

Արտաշիրի մի այլ արկածն է նրա կռիվը Հավթանբոխտ դևի հետ: Հսկայական մի ուժ, որին չի կարողանում դեմ դնել պարսիկ հերոսը և քանի անգամ անհաջողություն կրելուց հետո փախչում է և այնպես փրկվում ահռելի թշնամուց: Ճանապարհին դադար է առնում մի գյուղում և հյուրընկալություն խնդրում Բուրջակ և Բուրջակտուր անուն եղբայրներից, ձևանալով որպես մի հասարակ ձիավոր Արտաշիրի պարտված զորքերից: Եղբայրները ընդունում են անծանոթ օտարականին: Շուտով մտերմանում է Արտաշիրը և հայտնում է իր ով լինելը: Նրանց օգնությամբ Արտաշիրը ծրագրում է, թե ինչպես կործանէ հսկա Հավթանբոխտին: Որոշում են, որ Արտաշիրը ծպտյալ մտնէ դևի մոտ ծառայության: Այդպես էլ անում է: Դևի և նրա սպասավորների աչքը մտնելուց հետո, մի բարի օր ինքն է հանձն առնում կերակրել դևին: Մինչ դևը բերանը բաց սպասում էր սովորական կերակուրին, Արտաշիրը տալիս է նրան հալած արճիճ: Դևը տեղնուտեղը պայթում է և սատակում:

Սասանյան պատմությունը, հայտնի է, իր տեղն ունի հռչակավոր «Շահնամեի» մեջ: Հիշածս զրույցները Արտաշիրի կյանքից գտնում ենք և

այստեղ գրեթե նույնորեն: Զանազանությունն այն է, որ Ֆիրդուսին կոչում է իշխան Բանակին **Տաբակ**, և նա Սպահանցի չէ, այլ Ջահրամից՝

**Yeki namvar bud names Tebak:**
**Ki ber sahr gahram bud u padsa:**

Տաբակը յոթն որդի ուներ, «Կարնամակի» Բանակը՝ վեց: Լսելով Արտաշիրի ընդվզումը, լքում է Բահմանին, որ է որդի Արտավանի և անցնում ապստամբի կողմը: Բահմանը պարտվում է և Արտաշիր գրավում է Ստահր քաղաքը, որ երևում է Բահմանի իշխանության կենտրոնն է: Սելքում Տաբակը ինչպես և Բանակը, հավատ չեն ներշնչում Արտաշիրին: Երբ Զենտավեստը ձեռքին երդվում է, որ հլու ծառա է և ոչ մի դավաղրական զաղտնիք չունի, այն ժամանակ Արտաշիրը ընդունում է նրան և միասին հաղթում են Բահմանին:

Հրեշի պատմությունը ևս ծանոթ է «Շահնամե»-ին: Միայն թե անունը կարդացվում է Հավքուատ (**Haftwad**) փոխանակ Հավքանբոխտի: Բանաստեղծը բացատրում է անունը նրանով, որ հրեշը յոթն որդի ուներ: Հավքուատը մի աղքատ մարդ էր և իր աղջկան շնորհիվ ձեռք է բերում մի չնաշխարհիկ որդ, որ աճելով ստանում է փղի մեծություն և ուժ: Արտաշիրը սպանում է Նուշզատի որդի Միհրակի աջակցությամբ դևին նույն ձևով, ինչպես սպանում է Հավքանբոխտին, այսինքն՝ ծպտյալ ծառայության է մտնում Վիշապի մոտ և հալած արճիճ տալով մեռցնում: «Կարնամակի» մեջ Անուշակզատի որդի Միհրակը, ընդհակառակը, Արտաշիրի դիմադիրներեն է և ընկնում է Արտաշիրի սրից:

* * *

Թվում է, որ նման առասպելներով խառնված է եղել և հայ նախաբարական միջավայրը: Տակավին Խորենացու ժամանակ կենդանի է և ընտանի հայ մթնոլորտում Արտաշիրի առասպելական պատմությունը մինչխսկ ավելի լայն բովանդակությամբ, քան տալիս է Կարնամակը և կամ մյուս աղբյուրները: Տեսականապես հնարավոր է, որ պարսիկ հերոսական վեպը ազդած լինի և հայ ստեղծագործության վրա: Մասնավորապես ինչ վերաբերում է Արտաշիրի ժամանակակից և հակառակորդ Խոսրով-Տրդատ թագավորների մասին պահված ազգային ավանդություններին:

Այս տեսակետից հետաքրքրական է կանգ առնել սպահանցի իշխան Բանակի վրա: «Շահնամեն» անվանում է նրան **Տաբակ:** Նյոլդեքե հաստատ չէ համարում Բանակ ընթերցումը, հնարավոր է գտնում կարդալ **Բոհակ**:

Արդյոք այս վիճելի ընթերցվածը չէ՞ թաքցնում Անակ Պարթևի անունը: Պահլավ գրերը այնքան միակերպ են, որ արգելք չեն կարող լինել այս ենթադրության:

Բանակը ինչպես և Տաքակը Պարթև ցեղից են, մեկը` Սպահանի շրջանում, մյուսը` Ջահրամում, որ, կարծվում է, արդի Գարում է: Սրանք Արտավանի իշխանության ներքո երկրների պետեր են: Բանակը նույնպիսի դավաճան, որպես հայ ավանդության Անակը: Արտավանին լքելով, ծառայում են Արտաշիրի շահերին, և օգնում նրան, սպանելու Պարթև Արտավանին և կամ Խոսրովին:

Արտաշիրի կռիվը Հավքանբոխտի հետ տալիս է մի ուրիշ վիպական մոտիվ, այն է քարեկամ ձևանալ թշնամուն, հավատը գրավել և խարդախորեն սպանել: Արտաշիրի վերաբերումը Հավքանբոխտին հար և նման է Անակի դավաղրության հայ Խոսրովի դեմ:

Հավքանբոխտը առասպելական դեմք է և հավանորեն կապակից այն կրոնական մեծ վերանորոգության, որ տեղի ունեցավ Սասանյանների համբարձումով: Պարթև պաշտամունքը տեղի տվին Զրադաշտականության, կամ ավելի հեշտ, վերջինս դարձավ պետական պարտադիր կրոն: Ի զուր չէ ասած «Կարնամակ»-ում, որ Հավքանբոխտի սպանությունից հետո Արտաշիրը վերահաստատեց Միհրական և Սեդա մեծ տոները:

**Haftanboxt, Haftwad, Astawad** զանազան ընթերցվածներն արդեն վկայում են, որ հրեշի բուն անունը եղծված է և պետք ունի ստուգության: Չէինք ուզենալ անուշադիր թողնել, որ Ագաթանգեղոսի ասելով, Հայոց թագավորը Արտաշիրի հարձակումը վանելուց հետո «հրաման տայր **յոթն բագինն** մեհենիցն ուխտաւոր լինել պատկերաց կռոց դիցն պաշտաման»:

Արդյո՞ք որևէ զաղտնի կապ չկա յոթն բագին դարձվածի և Հավքանբոխտի մեջ: Կարելի՞ է հրեշի անվան ստույգ ընթերցմամբ մերձեցնել հայ բառին, կարծելով, որ նշանավոր դևը արտահայտում է յոթն բագինյան կռոց պաշտամունքը, կամ գուցե յոթն բագինը ընդունված իմաստից ավելի բան է ծածկում իր մեջ, որ նվազ հավանական է:

Հավքանբոխտի դեմ լարած թակարդի մեջ Արտաշիրին աջակից են Բուրջ և Բուրջակտուր եղբայրները: «Կարնամակը» հիշում է, որ Արտաշիրի հայրը Սասան երազում տեսավ, որ իր տան երեք նշանավոր հրատները, սրբազան կրակները` **froba, gushasp** և **burdjin** բորբոքվում և լուսավորում են ամբողջ աշխարհը: Նախագուշակություն, ուրեմն, Արտաշիրի հաջողության:

Անտարակույս, Բուրջ և Բուրջակտուր եղբայրները դիմառնություն են **burdjin** կրակի: Հայտնի է, որ առաջին հրատը **adr-Farnbag** համարվում էր հովանավոր կրոնի, երկրորդը **adr-Gushnasp** (= հին Վշնասպ) - պատերազմական, երրորդը` **adr-Burzin - Mihr -** երկրագործության: Բուրջ ներկայացնում է վերջին հրատը, այն է **Burdjin** (= հին Բուրջին): Իսկ Բուրջակտուր, պետք է ենթադրել, աղավաղումն է **burdjak-dar** բառի, որ է հրատը պահող մոգ պաշտոնյա, կամ ավելի հավանական **burdjin-atur** (= **ad-r,** հուր):

Զարմանալի է, որ այս մտացածին եղբայրների անունը հիշվում է և հայ ավանդության մեջ: Հայ ռացիոնալիստ պատմաբանը՝ Խորենացին, աշխատում է իր սովորությանը համաձայն իրական զգեստ հագցնել առասպելական էակներին: Նրա մեկնությամբ Արտաշիրի դեմ մաքառեց Արտավանի ազգականներից Կարենյան Պահլավ տունը առաջնորդությամբ Վեհսաճանի: Սակայն, շուտով պարտվեց, ամբողջ տունը բնաջինջ եղավ և մի միայն մի տղա կարողացավ փրկվել, փախչելով Քուշանաց աշխարհը: Փրկողը ոչ այլ ոք էր, եթե ոչ տան մտերիմներից ոմն Բուրզ անունով:

Արդ՝ այս Բուրզը, հավանորեն, նույնն է ինչ որ «Կարնամակի» Բուրջը և Բուրջակտուրը: Բուրզը փախչում է Քուշանաց աշխարհը: Քուշանք հայտնի Եվթաղ կամ Հեփթաղ ցեղն է, որ V-VI դարերում տիրում էր Խորասանի հյուսիսային սահմաններին:

Պարսից վեպի Բուրջ և Բուրջակտուրը նույնպես Խորասանի կողմերիցն է և այս է պատճառը, որ Արտաշիրը ձևանում է խորասանցի, երբ նրանց խորհրդով, ուզում է ճենզել Հավքանբոխտին:

Խորհրդավոր հանգամանք: Նոր ապաստ մեր մեկնության, որ Բուրջ թե Բուրզ արտահայտիչ են Բուրզին՝ միիր կրակին: Հայտնի է, որ սրա գլխավոր ատրուշանը գտնվում էր Խորասանում, Ռեվանտ քաղաքում, ոչ հեռի Նյուշապուրից: Այս այն վայրն է, ուր նահատակվեցին Ղևոնդյանց քահանաները՝ 451 թվի ապստամբության հետևանքով, և որ կոչվում է Փարպեցու մոտ Ռևան:

Խորենացու Վեհսաճանը խնամություն ունի «Կարնամակի» Բարչանի հետ: Արտավանին հաղթելուց հետո Արտաշիրը գնում է **Կարմանի** Բարչան թագավորի վրա, որ ապաստան էր տվել Արտավանի երկու որդոց, մինչ մյուս երկուսը փախել էին Կակուլի արքայի մոտ: Իսկ ըստ Խորենացու Արտավանի ազգականները, Կարնան Պահլավները ճակատում են Արտաշիրի դեմ Վեհսաճանի գլխավորությամբ:

Թվում է, որ Կարնան կշռում է Կարման և Վեհսաճանը՝ Բարչան, կամ Պահլավ ձևով, Վարճան: Թերևս Վեհսաճան, կարդալու է Վեհ-ռաճան, կամ Բարչանը՝ Բեհ-սաչան, որի պահլավ ձևը՝ Վեհ-սաճան:

* * *

Մի դիտողություն ևս:

Տաբարի պատմում է, անշուշտ, առնելով «Կարնամակի» նման միպական աղբյուրից, որ Արտավանը Արտաշիրի ապստամբության առթիվ կամենալով նրան վատաբանել, թուղթ է գրում, որի մեջ ասում է. «Դու մեղավոր ես, որ անցար չափդ և վճռեցիր բախտդ, օ՜ քուրդ, որ քրդերի վրանում ես ծնված» (**Nöldeke**, Geschichte der Perser und Araber, p. 11-12) :

Խորենացին նույն բանը պատմում է հայ Արտաշես թագավորի վերաբերյալ: Երվանդ, լսելով, որ Սմբատ Բագրատունին աշխատում է արքայորդի Արտաշեսին հաստատել հայրենի գահի վրա ընդդեմ Երվանդի, մարդ է ղրկում և հանդիմանում, թե «խաբեալ ի ստնտուէդ սնուցանես զորդի մարիդ հակառակ ինձ»: Մար ասելով հասկացվում է այստեղ քուրդ:

Այս կետը ևս ցույց է տալիս որ «Կարնամակեան» զրույցները տարածված են եղել հայ միջավայրում:

Մեր համեմատությունները մի բան են վկայում, որ Ագաթանգեղոսի պատմությունը Գրիգորի և Տրդատի փոխհարաբերության և թերևս ծագման մասին վիպական գունավորում ունի հայտնի չափով: Ավելի հեռուն գնալ դժվար թե հիմք կա:

Ճիշտ է, ասորի Գևորգ եպիսկոպոսի տված տեղեկությունները կարող են խրախուսել կասկածի տակ առնելու Ագաթանգեղոսի վարկածը Գրիգորի ծագման վրա, բայց և այնպես զգուշանալու է այս գայթակղիչ հայտնությունից: Գևորգ եպիսկոպոս († 740), ապրած ութերորդ դարու առաջի կեսին, ծանոթ էր Գրիգորի մի կենսագրության, ուր հայ երկրի Լուսավորիչը ազգով հոռմայեցի էր համարված: Տղայության օրերից Հայաստան գալով որպես թե սնավ և ուսավ հայ գիրն ու լեզուն և Տրդատի մերձավոր եղավ և նրա փրկության պատճառ (3):

Վստահելով այս տեղեկության, կարելի էր կարծել, որ Գրիգոր հոռմայեցի է անվանված այն պատճառով, որ նա ծագումով հոռմեական բաժնի հայկական երկրամասերից է եղել և գուցե ելած այն բեղուն միջավայրեն, որտեղից ծնան կապպադովկիական նշանավոր հայրերը Գրիգոր անունով:

Սակայն, անխոհեմություն կլիներ անպայման հավատ ընծայել ասորի եպիսկոպոսին: Սա և կամ իր աղբյուրը երևում է շփոթել են Գրիգորին Ագաթանգեղոսի հետ:

Գրիգորի կենսագիրն է, որ ասում է իր մասին, թե հոռմայեցի էր Հայաստան եկած և Տրդատի մերձավոր՝ այն է քարտուղար: Գրիգորի ժամանակ հայերը գիր ու դպրություն չունեին, ուստի Գևորգ Ասորու խոսքը, որ Գրիգոր ուսավ հայ գիրը, բավական է, որ խախտե մեր հավատը դեպի նրա ճշմարտախոսությունը:

Մեր քննությանից հետևում է մի բան, որ Գրիգորի կյանքը Ագաթանգեղոսի գրչի տակ, որպես պատմական գործ, կրած է իրանական վիպախոսության ազդեցությունը ի վնաս պատմական իսկության: